Կը խնդրուի ծանուցանել՝
ՏՈՔԹ. ԱՐՄԷՆ ՍԻՒՆԻԻ
մահը, յետ երկարատեւ հիւանդութեան։
Ըստ ողբացեալին փափաքին դիակի - զումը պիտի կատարուի այսօր, Շաբաթ, ժամը 14ին Փէռ Լաշէզի Քոլոմպարիոմը։
Ներկայս ընդունիլ իբրեւ մահազդ ։

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Այրի Տիկին Սարգիս Տէօքմէճեան եւ զաւակները յիսունական Ն. Ֆ. կը նուի - րեն Սեւրի Սամուէլ Մուրատ վարժարա - նին եւ Դպրոցասէր Տիկնանց վարժարա - նին՝

ԳէՈՐԳ ԵԶԵԿԵԱՆԻ
մահուան առթիւ։
(Ստանալ «Յառաջ»էն)։

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Այրի Տիկին Վարդիթեր Եզեկեան, զաւակները՝ Հայկուհի, Արա եւ ընտանե - կան պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր կամ ծաղկեպսակով ցաւակցու - թիւն յայտնեցին իրենց ամուսնոյն, հօր եւ ազգականին՝

ԳէՈՐԳ ԵԶԵԿԵԱՆԻ
կսկծալի մահուան առթիւ ։

×

Պ. Յակոբ Կիւրենեան եւ զաւակները (Շարվիլօ), նոյնպէս զաւակները (Ամե - րիկա), Տէր եւ Տիկին Մանուկեան (Ա - մերիկա), Հայկազ, Գրիգոր, Գ. Կիւրեն - եան (Փարիզ), Բեհլիվանեան (Փարիզ), Տէր եւ Տիկ. Յ. Թէրզեան (Փոն տը Շէ - րիւ), իրենց խորին շնորհակալութիւննե - րը կը յայտնեն բոլոր անոնց որ իրենց ցաւակցութիւնները յայտնած են հեռա - գրով, նամակով եւ կամ անձամբ, իրենց ողբացեալ կնոջ, մօր, քենիին, հարսին եւ սանամօր ՏԻԿԻՆ ՆՈՒԱՐԴ ԿԻՒՐԵՆ - ԵԱՆԻ (ծնեալ Լուսիկեան )ցաւալի մահ - ուան առթիւ։

×

Տէր եւ Տիկին Ժիրայր Տէր Վարդան - եան, Տէր եւ Տիկին Վաղարշակ Տէր Վարդանեան, եւ Տէր եւ Տիկին Գամէր Տէր Վարդանեան եւ զաւակները, իրենց շնորհակալութիւնները կը յայտնեն հե - ռաւոր կամ մօտաւոր բոլոր այն կազմա - կերպութիւններուն, ընկերներուն, հայ - րենակիցներուն եւ բարեկամներուն՝ ո - րոնք նամակով, հեռագիրով, թերթով եւ անձամբ իրենց ցաւակցութեան եւ սփոփանքի արտայայտութեամբ մասնակ - ցեցան, իրենց սիրեցեալ մօր նորոգ հան - գուցեալ Բեբրոնիա Տէր Վարդանեանի (ծնեալ Վարդանեան) յանկարծական մահուան առթիւ, իր 85 տարեկան հասա - կին։ Շնորհակալութիւն նաեւ բոլոր ա - նոնց որոնք նուիրատուութիւններ ըրին փոխան ծաղկեպսակի ։



## ՀԱՅԱԾԷՍ ՊԱՏԱՐԱԳ
## ՎԱՏԻԿԱՆԻ ՁԱՅՆԱՍՓԻՌԷՆ

Այս Կիրակի, ժամը 10·30ին, հայկա - կան հանդիսաւոր Ս. պատարագ եւ քա - րոզ պիտի ձայնասփռուին Վատիկանի ռատիոկայանէն ։

Պիտի քարոզէ Գեր. Ներսէս վրդ. Սեթ - եան՝ Մեծաւոր Հռոմի Լեւոնեան Հայ Դպրոցի ։

Միջին ալիք՝ 196 մ.։ Կարճ ալիք՝ 19·84, 25·67, 31·10 ։

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Այս Կիրակի, Յունիս 5, յաւարտ Ս. պատարագի, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցիին մէջ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի

ՄԵԼՔՈՆ ՏԷՐ-ՄԵԼՔՈՆԵԱՆԻ
(Մահացած Պէյրութի մէջ)
մահուան տարելիցին առթիւ ։

Իր յիշատակը յարգողներէն կը խնդ - րուի ներկայ գտնուիլ ։

×

Պ. Դրօ Աբրահամեան եւ զաւակները, ինչպէս նաեւ Նորիկեան ընտանիքը կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշ - տօն պիտի կատարուի իրենց կնոջ, մօր եւ զաւկին՝

ՄԱՐԻԱՄ ԱԲՐԱՀԱՄԵԱՆԻ
մահուան քառասունքին առթիւ, այս Կի - րակի առաւօտ Սէնթ Անթուանի Ս. Թա - դէոս եկեղեցւոյ մէջ։

Ողբացեալին յիշատակը յարգողներէն կը խնդրուի ներկայ գտնուիլ ։

×

Տէր եւ Տիկին Ժիրայր Տէր Վարդան - եան, Տէր եւ Տիկին Վաղարշակ Տէր Վարդանեան, Տէր եւ Տիկին Գամէր Տէր Վարդանեան եւ զաւակները, կը ծանու - ցանեն թէ պատարագ եւ հոգեհանգստեան հանդիսաւոր պաշտօն պիտի կատարուի, Պօմոնի Ս. Գր. Լուսաւորիչ եկեղեցիին մէջ, մասնակցութեամբ Թաղիս Արժա - նապատիւ Տէր Հմայեակ Համբարձում - եանի եւ Դպրաց Դասուն, Յունիս 12ին Կիրակի ժամը 10ին իրենց սիրեցեալ մօր եւ մեծ մօր նորոգ հանգուցեալ Բեբրոնիա Տէր Վարդանեանի (ծնեալ Վարդանեան, Զիթողցի, Կարին), մահուան քառասուն - քին առթիւ։ Կը հրաւիրուին բոլոր բարե - կամները։ Այս առթիւ Տէր Վարդանեան եղբարք յիսուն Ն. Ֆ. կը նուիրեն Փա - րիզի Մշակութային տան եւ քսան Ն. Ֆ. Լուսահոգի Սրբազան Պալաքեանի շիրի - մին շինութեան։ (Մշակոյթի Տան գու - մարը ստանալ «Յառաջ»էն)։

×

Այրի Տիկին Մինասեան եւ զաւակները կը ծանուցանեն թէ հոգեհանգստեան պաշտօն պիտի կատարուի այս Կիրակի առաւօտ, Պուլվար Օտտոյի Ս. Յակոբ եկեղեցւոյ մէջ իրենց ողբացեալ ամուս - նոյն եւ հօր ՅԱԿՈԲ ՄԻՆԱՍԵԱՆԻ մահ - ուան քառասունքի առթիւ։ Կը հրաւիր - ուին ողբացեալին յիշատակը յարգողնե - րը ։



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆԿԱԽՈՒԹԵԱՆ 42ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԸ ՌՈՄԱՆԻ ՄԷՋ

Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Վալան - սի Շրջ. Կոմիտէի եւ մասնակցութեամբ Ռոմանի «Անդրանիկ» խումբի եւ Նոր Սե - բաստիոյ Ռոմանի «Անդրանիկ» ... ։


Այս Շաբաթ, ժամը 21ին, Բողոքակա - նաց սրահը։

Կը խօսի Ընկ. ՆՇԱՆ ՊԵՏՐՈՍԵԱՆ
(Էքս Լէ Պէնէն)

Գեղարուեստական ճոխ բաժին ։
Երգ, մեներգ, արտասանութիւն եւ մե - նապար ։
Մուտքը ազատ է

## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ
### ՍԵՒՐ

1960-1961

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ ԱՐ - ՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ ։
Պայմաններուն համար դիմել՝

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)
Tél. : OBS. 18-28

×

ՏԱՐԵՎԵՐՋԻ ԵՒ ՊԱՐԳԵՒԱԲԱՇԽՈՒ - ԹԵԱՆ ՀԱՆԴԷՍԸ՝ ԿԻՐԱԿԻ՝

ՅՈՒՆԻՍ 26, ԺԱՄԸ 16ԻՆ

## Ֆ. ԿԱՊՈՅՏ ԽԱՉԻ ԿԱՅԱՆ

Պզտիկներու առաջին խումբին արձա - նագրութիւնները փակուած են։ Սակա - ւաթիւ տեղեր միայն մնացած են Օգոս - տոսի համար։

Կեդրոնի արձանագրութեան օրերն են Չորեքշաբթի եւ Ուրբաթ ժամը 13–14 եւ 18–20։ Ասկէ դուրս ժամադրութեամբ, հեռախօսթուիւէն 27·35։ 5 Րիւ Մէյրան։

Փարիզէն դուրս դիմել տեղական մաս - նաճիւղերուն ։

## Հ. Յ. Դ.

### ԸՆԿԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՆԵՐ

ՇԱՒԻԼ.— Հ. Յ. Դ. «Արղութեան» խումբի ընկերական ժողովը այս Շաբաթ երեկոյ ժամը 9·30ին, սովորական հա - ւաքատեղին։

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՍԵԲԱՍՏԻՈՑ ՄՈՒՐԱՏ ՈՒՍՈՒՄՆԱՍԻ - ՐԱՑԻ ՀԱՆԴԷՍԸ, իր սանին շրջանաւար - տութեան առթիւ՝
ՅՈՒՆԻՍ 19ԻՆ

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

Մայր Եկեղեցիի վարչութիւնը կը ծա - նուցանէ թէ՝ այս Կիրակի Հոգեհալուստի տօնը կը կատարուի օրուան յատուկ հան - դիսաւոր արարողութեամբ, դպրախում - բին բազմաձայն երգեցողութիւնով ։

× Տօնին Բշ. օրը (6 Յունիս), Կրօն. Ընկերակցութեան հրաւէրով երգչախում - բը իր ամբողջ կազմով, ընկերակցու - թեամբ քահանայի եւ սարկաւագներու եւ վարչութեան անդամներու, կ'ուղեւորի Սէն Ռաֆայէլ, հոն գտնուող նորահաս - տատ «Հայկական Տուն»ին մէջ պատա - րագի արարողութիւն կատարելու, հոգե - պէս մխիթարելու համար պատսպարեալ - ները ։

## Կ'ՈՒԶՈՒԻ

15 – 18 տարեկան օրիորդ մը խանու - թի գործերով զբաղելու համար եւ ծա - խելու (կնոջ մեծաքանակ հագուստի հա - մար)։

Դիմել՝

**Alexanian**
86, RUE DE CLÈRY CEN. 37-[illegible]

Օր. Մարի Պօտուրեան եւ ազգականները ցաւով կը ծանուցանեն իրենց մօր եւ ազգականին՝

## ՄՐԲՈՒՀԻ ՊՕՏՈՒՐԵԱՆԻ
(ԾՆԵԱԼ ՂԱԶԻԿԵԱՆ)

մահը, որ տեղի ունեցաւ Մայիս 28ին: Յուղարկաւորութիւնը կատարուեցաւ Մայիս 30ին, ի Վենետիկ:

Կը խնդրուի ներկայս իբրեւ մահազդ ընդունիլ:

ՅԱՌԱՋ.— Մեր ցաւակցութիւնները Օր. Մարի Պօտուրեանի:

---

Տէր եւ Տիկին Յ. Տարաքճեան եւ զաւակները (Մարսէյլ), Տէր եւ Տիկին Ռոզիէ եւ զաւակները (Մարսէյլ), Տէր եւ Տիկին Յ. Կէրկէրեան եւ զաւակները (Պօմոն(, Տէր եւ Տիկին Գարթալեան եւ զաւակները (Թուրքիա), Պ. Աճէմեան (Պարժոլ), Այրի Տիկին Մ. Րէյիսեան եւ զաւակները (Պոմօն), Տէր եւ Տիկին Զարդարեան եւ զաւակները (Մարսէյլ), Տէր եւ Տիկին Օ. Կէրկէրեան եւ զաւակները (Լա Ռոզիէր), խոր կսկիծով կը ծանուցանեն իրենց սիրեցեալ հօր, աներոջ, մեծ հօր եւ ազգականին

### ԽԱՉԻԿ ԹԻԼԵԱՆԻ
(66 Տարեկան)

մահը, որ տեղի ունեցաւ Մայիս 26ին, Պոլսոյ մէջ, ուր գացած էր Մարսէյլէն, աւելի մէկ ամիս առաջ, տեսնելու համար իր ազգականները: Թաղումը կատարուած է Պոլսոյ մէջ: Ցաւակցութեանց համար՝ Կէրկէրեան, 8 rue Philippe, Պօմոն:

---

## ՀԱՄԱԶԳԱՅԻՆ

Հերթական դասախօսութիւնը տեղի պիտի ունենայ Յունիս 10ին, Ուրբաթ օր, ժամը 21ին Մշակոյթի Տան մէջ, 17 Րիւ Պլէօ, մէթրօ Քատէ:

Դասախօս՝ Պ. ՅՈՎՀԱՆ ԿԱՐԱՊԵՏԵԱՆ

Նիւթը՝ Շէյխսփիր եւ Թուրքերը:

Մուտքը ազատ է:
Կը խնդրուի ճշդապահ ըլլալ:

---

## ՓՈԽԱՆ ԾԱՂԿԵՊՍԱԿԻ

Իր կնքահօր Գիսակ Փափազեանի (Ա-կընցի)մահուան առթիւ եւ անոր հօր՝ Տէր Արտաշէս քհնյ.ի յիշատակին որ իր ուսուցիչն է եղած (Թրքաբան եւ հռետոր), Պ. Լեւոն Քանարեան երեսուն Ն. Ֆ. կը նուիրէ Աղքատախնամին եւ քսան Ն. Ֆ. Հայ Մշակոյթի Տան: (Ստանալ «Յառաջ»էն):

---

### ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

Ֆ. Կ. Խաչի Մարսէյլի մասնաճիւղի տարեկան դաշտահանդէսը տեղի պիտի ունենայ Յուլիս 3ին:

×

«ՀԱՅ ՀԵՐՈՍԱՄԱՐՏԻ ՕՐԸ» ԽԱՆԱՍՈՐԻ տարեդարձի առթիւ: Շաւիլի անտառին մէջ, Յուլիս 24, Կիրակի օր:

---

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

Յունիս 12ի Կիրակի առաւօտ, ժամը 11ին, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ (8), տեղի պիտի ունենայ հոգեհանգստեան պաշտօն Հ.Բ.Ը. Միութեան հիմնադիր եւ ազգային բարերար

Ողբ. ՊՕՂՈՍ ՓԱՇԱ ՆՈՒՊԱՐԻ եւ բարերար ողբ. ՌԱՓԱՅԷԼ ՄԱՐԿՈՍԵԱՆԻ համար:

Այս առթիւ պիտի մատուցուի քառաձայն Ս. պատարագ:

Այս մեծ բարերարներուն յիշատակը յարգող հասարակութենէն կը խնդրուի ներկայ ըլլալ:

ԴԻՒԱՆ Հ.Բ.Ը. ՄԻՈՒԹԵԱՆ





---

### ԿԸ ՓՆՏՌՈՒԻՆ

Երեւանէն Տիկին Իուրիճա Էքմէքճեան ծնեալ Գարապաճաքեան կը փնտռէ Սեբաստացի Գարապաճաքեան ընտանիքի անդամներ որոնք ըստ իր ստացած տեղեկութիւններուն Փարիզի շրջանները կը բնակին:

× Երեւանէն Տիկին Հայկանուշ Տէր-տէրեան ծնեալ Գոճեան կը փնտռէ եղբօր որդին Պ. Գալուստ Գոճեանը:

× Հայաստանէն Նաւասարդեան չորս քոյրեր կը փնտռեն իրենց եղբայրը ենժենիէօր հողագործութեան Պ. Աղասի Արշակ Նաւասարդեանը որ ծնած է 1915 թուականին Իջեւանի շրջանի Սեւ Քար գիւղը, հօր անունը Արշակ, մօր անուն Ռատիան, քոյրերուն անունները, Սոնիա, Լօժէնի, Մանեա եւ Զինա:

× Երեւանէն Տիկին Իսղաբեր Ֆէթվաճեան կը փնտռէ իր ազգականը Պ. Խաչիկ Աղաճանեանը որ Փարիզ կը բնակի ըստ իր ստացած տեղեկութիւններուն:

Փնտռուած այս անձերու մասին տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի տեղեկացնել Փարիզի Հայոց Եկեղեցւոյ դիւանին, 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ (8):



### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

ՎԻԷՆ.— Տէր եւ Տիկին Դաւիթ Երամեան, Տէր եւ Տիկին Կասթոն Հիւմիդեան եւ զաւակները (Նիս) իրենց խորին շնորհակալութիւնները կը յայտնեն բոլոր անոնց, որոնք անձամբ, նամակով եւ մամուլի միջոցաւ իրենց ցաւակցութիւնները յայտնեցին մեր սիրելի եւ ողբացեալ եղբօր եւ մօրեղբօր՝

ՊԱՂՏԻԿ ԵՐԱՄԵԱՆԻ (Պոլիս)

կսկծալի մահուան առթիւ:

Եւ քառասունքին առթիւ, Տէր եւ Տիկին Դ. Երամեան տասնական Ն. Ֆ. կը յատկացնեն Վիէնի Կապ. Խաչի դպրոցներուն, Հ. Յ. Դ. Անի Կոմիտէին, Նոր Սերունդին եւ Ֆ. Կ. Խաչի օղափոխութեան կայանին:

### ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

Փարիզի Ս. Յով. Մկրտիչ եկեղեցւոյ Կրթ. ձեռնարկներու համար եղած են հետեւեալ նուիրատուութիւնները:

Ողբացեալ Գիսակ Փափազեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի, Տէր եւ Տիկին Յարութիւն Ժամկոչեան 50 Ն. Ֆ., Տիկին Արմենուհի Գըլըճեան 10 Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Եղուարդ Խըտըրեան քսան Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Սայապալեան քսան Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Կարօ Պապուխճեան 25 Ն. Ֆ., Տէր եւ Տիկին Հրանդ Թորոսեան երեսուն Ն. Ֆ.: Ողբացեալ Տիկին Իսկուհի Թաթուլի մահուան առթիւ փոխան ծաղկեպսակի, Տէր եւ Տիկին Բարսեղ Տամլամեան 20 Ն. Ֆ.:

---











Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՎԱՐՋՈՒ ԱՐԿՂՆԵՐԸ

27 Մայիս 1960 Թուականէն առաջ վարձուած դրամարկղները մինչեւ նոր որոշում մը չեն կրնար բացուիլ ։

Շատ ստիպողական պարագաներուն երբ անպայման պէտք է բանալ այս արկղերը Ելմտական նախարարութեան մասնաւոր արտօնութիւնը անհրաժեշտ է ։

## ՎԱՐԿԵՐՈՒ ԳՈՐԾԱՌՆՈՒԹԻՒՆՆԵՐԸ

Վարկերու գործառնութիւնները ներկայիս ի զօրու եղող որոշումներու եւ սահմաններու մէջ պիտի շարունակուին ։ Միայն 27 Մայիս 1960էն առաջ բացուած եւ մինչեւ 15 Յունիս 1960 կատարուելիք վճարումները երբ անցնին 300·000 ոսկին պէտք է որ Ելմտական նախարարութեան մասնաւոր արտօնութիւնը առնուի ։

## ՊԱՐՏԱՄՈՒՐՀԱԿՆԵՐ

27 Մայիսէն առաջ զանձումի յանձնըւած պարտամուրհակները կարելի պիտի ըլլայ դրամատան մէջ չահագրգռուողներուն հաշիւէն փոխանցել կամ անոնց համար նոր հաշիւ բանալ ։

Այս զեկոյցը ի զօրու է մինչեւ 15 Յունիս 1960 Թուականը ։

---

Ստեփան Նաւասարդեան եւ որդին Տիգրան, Տիկին Շակայ եւ եղբայրները՝ Միշէլ եւ Ելի կը ծանուցանեն դառնակսկիծ մահը՝

### ՏԻԿԻՆ ԷՍԹԷՐ ՆԱՒԱՍԱՐԴԵԱՆԻ

որ տեղի ունեցաւ Յունիս 4ին, յետ երկարատեւ հիւանդութեան, Պուսիքօ հիւանդանոցը ։

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այս Հինգշաբթի ժամը 10·45ին, Փարիզի Ս· Յով· Մկրտիչ եկեղեցին, ուրկէ մարմինը պիտի փոխադրուի Պանեէօյի գերեզմանատունը ։

Մահագդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբրեւ այդ նկատել ։

---

## ՄԱՅԻՍ 28Ի ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ

«Մայիս 28» կը տօնուի Րիւ ժէ Սէն Լուի սրահին մէջ, Յունիս 19ին ։

Մանրամասնութիւնները յաջորդով ։

×

### ԻՍԻԻ ՄԷՋ

Կը տօնուի 12 Յունիս կիրակի կէսօրէ վերջ, ժամը 5ին, Խրիմեան դպրոցին մէջ, աւանդական ճաշ ։ Նախօրօք արձանագրուիլ Զաւարեանի ընկերներու մօտ, եւ հեռաձայնով՝ ՄԻՇԸԼԷ 89·60 Թօփալեանի ։

## ԿԱՐՄԻՐ ԽԱՉ

Այս տարի Հայ Կարմիր Խաչի Ֆէյսան – վիլէի օդափոխութեան կայանի բացումը տեղի պիտի ունենայ Յուլիս 1ին ։

Արձանագրութեան համար դիմել Հայ Կարմիր Խաչի կեդրոնատեղին, 15, Րիւ Ժան Կուժօն, Փարիզ, Երկուշաբթի եւ Ուրբաթ առաւօտները, ժամը 10–12 ։



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## "ՅԱՌԱՋ" ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Արժանթէօյէն Պ· Քէչիշեան կը վերանորոգէ մէկ տարեկան բաժանորդագրութիւնը Տիկին Մանուկեանի, Թեհրան ։

×

Ջերմապէս կը խնդրենք որ Յառաջի Շէք – Փօսթալի թիւը՝ 15069 – 82 օգտագործուի ՄԻԱՅՆ Յառաջի վերաբերեալ հաշիւներու համար (բաժնեգին – գործակալութիւն, ծանուցում) ։ Տարբեր նպատակներու յատկացուելիք գումարները (զանազան թերթերու բաժնեգիններ կամ զանազան կազմակերպութեանց նուէրները) ղրկել միայն Մանտա–քարթով ։

Շնորհակալութիւն

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

## ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

26 Յունիս, Կիրակի օր, ժամը 13–20, իր հաստատութեան պարտէզին մէջ ։

### ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ ԵՐԳ, ՊԱՐ, ՆՈՒԱԳ ԵՒ ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ

Ինչպէս նաեւ երգախառն ներկայացում մը սանուհիներուն կողմէ ։

Ծախքերու մասնակցութիւն 2·50 Ն·Ֆ· ։

Հաղորդ· միջոց․— Էկլիզ տը Փանթէն՝ առնել 146 թիւ օթօպիւսը եւ իջնել Րէն – սի Փավիյեօն ։

## ՆԿԱՏԻ ՈՒՆԵՆԱԼ

ՄԱՐՍԷՅԼ․— Համախարբ· Միութեան տարեկան մեծ դաշտապարահանդէսը տեղի պիտի ունենայ Յուլիս 3ին, Կիրակի Զօխուրեանի ագարակին մէջ, Սէն Լու, Կրան Փէն ։ Ծանօթ․— Թրազօշը իր խումբով կը մասնակցի ։ Մանրամասնութիւնները յաջորդով ։





## ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ ՎԱՐԺԱՐԱՆ

ՍԵՒՐ

—

### 1960-1961

ՈՒՍՈՒՄՆԱԿԱՆ ՏԱՐԵՇՐՋԱՆԻՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐԸ ԲԱՑՈՒԱԾ ԵՆ ։

Պայմաններուն համար դիմել՝

DIRECTION DU COLLÈGE SAMUEL MOORAT
26, Rue Troyon, SEVRES (S. et O.)
Tél. : OBS. 18-28

×

ՏԱՐԵՎԵՐՋԻ ԵՒ ՊԱՐԳԵՒԱԲԱՇԽՈՒԹԵԱՆ ՀԱՆԴԷՍԸ՝ ԿԻՐԱԿԻ՝

ՅՈՒՆԻՍ 26, ԺԱՄԸ 16ԻՆ

## ՀԱՅ ԿԱԹՈՂԻԿԷ Ս. ԽԱՉ ԵԿԵՂԵՑԻ

10 bis, Rue Thouin, PARIS

Յունիս 12ին Ամենասուրբ Երրորդութեան տօնին, կէսօրէ առաջ ժամը 10·30–ին հանդիսաւոր ձայնաւոր պատարագ պիտի ըլլայ եւ Մանուկներու Հաղորդութիւն ։

Պիտի պատարագէ եւ քարոզէ ԳԵՐՊ· ԿԱՐԱՊԵՏ Ծ· Վ· ԱՄԱՏՈՒՆԻ ։

## Salle Gaveau

45, Rue la Boëtie

ՊԱՐՍԿԱՀԱՅ ՋՈՒԹԱԿԱՀԱՐ՝

### ԼԷՈՓՈԼՏ ԱՒԱԳԵԱՆ

Կուտայ իր առաջին նուագահանդէսը Փարիզի մէջ՝

ՅՈՒՆԻՍ 10, ՈՒՐԲԱԹ ԺԱՄԸ 21ԻՆ

Բարձր հովանաւորութեամբ Փարիզի Պարսից դեսպանին ։

Յայտագիր՝ Վիթալի, Քուէլ, Պռամս, Տըպիւսի, Տէ Ֆալա – Քրայսլէր, Նովաչէք եւ Պարքոֆ ։

## ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած՝ Պէլվիլ – Լիլա հայկական դպրոցի Կրթ· Մարմնի կողմէ, բարձր հովանաւորութեամբ Հայրապետական պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ· ՄԱՆՈՒԿԵԱՆԻ, Կիրակի, Յուլիս 3ին, ժամը ճիշդ 15ին, Մէրի Փրէ Սէն Ժէրվէի սրահը (Մէթրօ Փրէ Սէն Ժէրվէ) ։

Երգ, պար, արտասանութիւն ։

Կը ներկայացուի ԱՐԱ ԳԵՂԵՑԻԿ աւանդավէպէն դրուագներ՝ ղեկավարութեամբ դպրոցին արուեստագէտ ուսուցիչ Պ· Յ· Թորոսեանի ։

Հանդէսի ընթացքին ճարտարագէտ Պ· Եդուարդ Իւթիւճեանի կողմէ պիտի ցուցադրուին հայրենիքի նոր կենցաղն մոգական լապտերով, եւ պատմական յիշատակարաններու նկարները ։

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Համաճարսանճակի Հայր· Միութեան Լիոնի մասնաճիւղի տարեկան դաշտահանդէսը, Յունիս 26ին, Կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ, Տէսինի նախկին Պ· Նազարի արճարանը այժմ ՍԵԻՍԱՆ ։ 35 Ավընիւ Ժան Ժօրէս, Տէսին (Իզէռ) ։



## ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է

### ՀԱՅ - ԲՈՅԺ

#### ԺՈՂ· ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ

խմբագիր՝ Շ· ՆԱՐԴՈՒՆԻ

Մարտ – Ապրիլի թիւը, միշտ նոր, միշտ այլազան, միշտ հետաքրքրական, միշտ օգտակար ։

Բովանդակութիւն․— Հասակները կ'երկարին (խմբ·)․— Սննդագրկութեան հետեւանքները (Տոքթ· Գալուստեան)․— Անքնութեան պատճառները եւ դարմանը (Տոքթ· Բամպուքճեան)․— Փորհարութիւն (Տոքթ· Ասքանազ)․— Ցղի կիներուն համար (Տոքթ· Դալլաքեան)․— Աղեթափութիւն (Տոքթ· Աշճեան)․— Որոտան գետը (Ս· Յակոբեան)․— Կանխենք ակռաներու փտումը (Հ· Համբարձումեան)․— Շաքարախտի մասին (Շ· Նարդունի)․— Յօդացաւի մասին (Տոքթ· Սերոբեան)․— Մեղուն բժիշկ (Քաղհան)․— Ի՞նչ գիտենք շաքարախտի մասին (Տոքթ· Ժերլիէ – Մոռէ)․— Արուեստական սերնդագործութիւն (Տոքթ· Պան-ծալի)․— Դասեր Թունաւորումներու դէմ (Խաչուհի)․— Դարձեալ քանսէրի մասին (Տոքթ· Շ· Այվազեան)․— Ի՞նչպէս մայր կը կանչեն ագռաւները․— Որո՞նք չեն կրնար օգտուիլ ։

Հայ – Բոյժի Մայիս – Յունիս թիւը նուիրուած է ամբողջովին Հայաստանի ։ Յառաջիկային նման բացառիկ թիւը ամբողջովին նուիրուած՝ աչքին, սեռային կեանքին, մանկութեան ։

Բաժանորդագրութեան պայմաններ — Տարեկան 15 նոր ֆրանք (1500 ֆրանք) ։ Արտասահման 20 նոր ֆրանք (2000 ֆ.) երկու տարեկանը մէկ կանխիկ վճարողին համար 37,5 նոր ֆրանք (3750 ֆր·) ։

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)

## ՀԱՅ ՄՇԱԿՈՅԹԻ ՏԱՆ

*Պրիւսէլէն Տէր եւ Տիկին Աւետիս Էմիրզեանէ եւ Պ. Լեւոն Սեւճիկեանէ 50ական Ն. Ֆ. Մկրտիչ Աւագեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի :*

*Մէզոն Ալֆորէն Տիկին Այճեանէ 30 Ն. Ֆ. Տէր Յարութիւն քհնյ. Ճորթուեանի մահուան առթիւ :*

*Հ. Յ. Դ. Խաժի Զաւարեան կոմիտէն 50 Ն. Ֆ. կը նուիրէ ողբ. ընկեր Ս. Տէր Թովմասեանի մահուան առթիւ :*

## ՇՆՈՐՀԱԿԱԼԻՔ

*Երէցկին Իսկուհի Ճորթուեան, Պ. Ստեփան Ճորթուեան, Տէր եւ Տիկին Գամէր Գոչեան եւ զաւակները, ինչպէս նաեւ ընտանեկան բոլոր պարագաները շնորհակալութիւն կը յայտնեն Հայր. Պատուիրակ Սերովբէ Եպիսկոպոսի, քահանայից եւ Դպրաց Դասերուն եւ հոգաբարձութեան, ինչպէս նաեւ բոլոր անոնց որոնք անձամբ, գրաւոր, ծաղկեպսակով ցաւակցութիւն յայտնեցին ՏԷՐ ՅԱՐՈՒԹԻՒՆ ՔՀՆՅ. ՃՈՐԹՈՒԵԱՆԻ վախճանման առթիւ :*

## ՀՈԳԵՀԱՆԳԻՍՏ

*Յառաջիկայ կիրակի, Յունիս 12ին, Փարիզի Ս. Յովհ. Մկրտիչ եկեղեցւոյն մէջ պիտի մատուցուի քառաձայն պատարագ եւ պիտի կատարուի հոգեհանգըստեան պաշտօն Ազգային եւ Եկեղեցական բարերարներ* Պօղոս Նուպար փաշայի, Ռափայէլ Մարկոսեանի *եւ գրագէտ* Արշակ Չօպանեանի *յիշատակներուն :*

×

*Յունիս 12ի Կիրակի առաւօտ, ժամը 11ին, Փարիզի Հայոց եկեղեցիին մէջ,* 15 Րիւ Ժան Կուժօն, Փարիզ (8), *տեղի պիտի ունենայ հոգեհանգստեան պաշտօն Հ.Բ.Ը. Միութեան հիմնադիր եւ ազգային բարերար*

*Ողբ. ՊՕՂՈՍ ՓԱՇԱ ՆՈՒՊԱՐի*

*եւ բարերար ողբ. ՌԱՖԱՅԷԼ ՄԱՐԿՈՍԵԱՆի համար :*

*Այս առթիւ պիտի մատուցուի քառաձայն Ս. պատարագ :*

*Այս մեծ բարերարներուն յիշատակը յարգող հասարակութենէն կը խնդրուի ներկայ ըլլալ :*

*ԴԻՒԱՆ Հ.Բ.Ը. ՄԻՈՒԹԵԱՆ*

## ԱՄԱՎԵՐՋԻ ՀԱՆԴԷՍ

*Կազմակերպուած՝ Պէլվիլ – Լիլա հայկական դպրոցի Կրթ. Մարմնի կողմէ, բարձր հովանաւորութեամբ Հայրապետական պատուիրակ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆի, Կիրակի, Յուլիս 3ին, ժամը ճիշդ 15ին,* Մէրի Փրէ Սէն Ժէրվէի *սրահը (Մէթրօ Փրէ Սէն Ժէրվէ) :*

*Երգ, պար, արտասանութիւն :*

*Կը ներկայացուի ԱՐԱ ԳԵՂԵՑԻԿ աւանդավէպէն դրուագներ՝ ղեկավարութեամբ դպրոցին արուեստագէտ ուսուցիչ Պ. Յ.* Թորոսեանի :

*Հանդէսի ընթացքին ճարտարագէտ Պ. Եդուարդ Իւթիւճեանի կողմէ պիտի ցուցադրուին հայրենիքի նոր կենցաղն մոգական լապտերով, եւ պատմական յիշատակարաններու նկարները :*

## ՅՈՒԼԻՍ 3ԻՆ

Սեբաստիոյ Ճանանգին Մուրատ Ուսումնասիրացի *հանդէսը իր տանին շրջանաւարտութեան առթիւ՝*

*ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏ վարժարանին մէջ :*

ՈՒՇԱԴՐՈՒԹԻՒՆ
ԼԷՈՓՈԼՏ ԱԽԱԳԵԱՆԻ
ՆՈՒԱԳԱՀԱՆԴԷՍԸ

*Յետաձգուած է Յունիս 17ին :*



Imprimerie Spéciale du journal « Haratch »

## ՄԱՅԻՍ 28Ի ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ

*ՊՈՐՏՕՅԻ ՄԷՋ*

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Պորտօյի Մուրատ խումբի, Հայաստանի Հանրապետութեան 42րդ տարեդարձը կը տօնուի այս Կիրակի ժամը 15·30ին* Մուլէն Պլէօի *ընդարձակ սրահը, Սընոն :*

*Կը նախագահէ ընկ. ՍԱՐԳԻՍ ՏՕՆԷՐԵԱՆ*

*Կը բանախօսէ ընկ. Հ. ՍԱՄՈՒԷԼԵԱՆ*

*Գեղարուեստական ճոխ բաժին՝ խմբերգ, արտասանութիւն, մեներգ եւ նուագ :*

*ՄՈՒՏՔԸ ԱԶԱՏ Է*

×

*ԻՍԻԻ ՄԷՋ*

*Կը տօնուի 12 Յունիս Կիրակի կէսօրէ վերջ, ժամը 5ին, Խրիմեան դպրոցին մէջ, աւանդական ճաշ : Նախօրօք արձանագրուիլ Զաւարեանի ընկերներու մօտ, եւ հեռաձայնով՝ ՄԻՇԸԼԷ 89·60 Թօփալեանի :*

*Կը նախագահէ ընկ. ԽԱՉԻԿ ՄԿՐՏԻՉԵԱՆ*

*Կը խօսի ընկ. ԺԻՐԱՅՐ ՄԻՐԻՃԵԱՆ*

*Հաւաքոյթը կը վարէ ընկեր Պ.* ՉԸՊՈՒՔՃԵԱՆ :

*Գեղարուեստական բաժին.—* Տիկիններ Մուրատեան *եւ* Գալայճեան *(երգ),* Պ. Զօհրապ Մուրատեան *(արտասանութիւն) :*

*Ճոխ յայտագիր :*

*Ճաշագին՝* 10 Ն. Ֆ. :

*ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ*

*«Մայիս 28» կը տօնուի* Րիւ Ժէ Սէն Լուի *սրահին մէջ, Յունիս 19ին :*

*Կը խօսի ընկ. ԱՍԱՏՈՒՐ ՔԷՕՍԷՅԵԱՆ*

*Մանրամասնութիւնները յաջորդով :*

*ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ*

26 Յունիս, Կիրակի օր, ժամը 15–20, իր հաստատութեան պարտէզին մէջ :

*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ*
*ԵՐԳ, ՊԱՐ, ՆՈՒԱԳ*
*ԵՒ ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ*

*Ինչպէս նաեւ երգախառն ներկայացում մը սանուհիներուն կողմէ :*

Ծախքերու մասնակցութիւն 2·50 Ն.Ֆ. :

*Հաղորդ. միջոց.— Էկլիզ տը Փանթէն՝ առնել 146 թիւ* օթօպիւսը *եւ իջնել* Րէնսի Փավիյեօն :

## ՄԱՐՍԷՅԼԻ ՄԱՅՐ ԵԿԵՂԵՑԻ

*Մայր եկեղեցիի Կրօն. Ընկերակցութիւնը կը ծանուցանէ թէ՝ իր ընդհ. ժողովը պիտի գումարուի յաջորդ կիրակի օր, 19 Յունիս, ժամը 15ին, Մայր Եկեղեցիի մէջ: Բոլոր անդամները կը հրաւիրուին ներկայ գտնուիլ: Որեւէ պատճառով իրենց անդամավճարը հատուցած չեղող անդամներէ կը խնդրուի ժողովէ օրէն առաջ եկեղեցիի քարտուղարութեան հասցնել առկախ մնացած գումարը եւ ստանալ համապատասխան ստացագիր, ժողովի իրենց մասնակցութիւնը օրինականացնելու համար :*



## Ա Ղ Ք Ա Տ Ա Խ Ն Ա Մ Ի

# ՏԱՐԵԿԱՆ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ

ՅՈՒՆԻՍ 12, ԺԱՄԸ 15էն 22

*ՄՈՆՄՈՐԱՆՍԻԻ ՀԱՆԳՍՏԵԱՆ ՏԱՆ ԴԱՐԱՍՏԱՆԻՆ ՄԷՋ*

36, AVENUE DE GAULLE, MONTMORENCY

**ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ — ԵՒՐՈՊԱԿԱՆ ՊԱՐԵՐ**

Ճոխ պիւֆէ, մատչելի գիներ եւ աւանդ ական շամփուրով խորոված :

*ԽԻՍՏ ԿԱՐԵՒՈՐ*

●

200 հոգինոց բացօթեայ ճաշ, կէսօրին ժամը 13ին, գին 10 Ն. Ֆ. : Կը խնդրուի կանխաւ ապահովել սեղանները : Դիմել Աղքատախնամի գրասենեակը,

32, Րիւ Տը Թրէվիզ (Հեռ. ՓՐՕ. 77–73)

ՄՈՒՏՔ 1 Ն. Ֆ.

*ՕԹՕՔԱՐ.— Շոգեկառք առնել Կար Տիւ Նորէն մինչեւ Անկէն : Անցնիլ կամրջակը եւ թիւ 6 օթօպիւսով իջնել Կրօլէի կայանը : Շոգեկառք ժամը* 10·15, 10·32, 10·45, 11·13, 11·55, 12·20, 12·32, 14: *Վերադարձ.— ժամը 18·30էն իւրաքանչիւր 20 վայրկեանը :*

ՅՈԲԵԼԵՆԱԿԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

## ԵՂԻՇԷ ՊԱՏՐԻԱՐՔ ԴՈՒՐԵԱՆԻ

ԾՆՆԴԵԱՆ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

*Նախաձեռնութեամբ Փարիզի եւ շրջանի եկեղեցական, ազգային, մշակութային*

19 Յունիս, կիրակի կէսօրէ ետք ժամը 2,30ին

*Նախագահութեամբ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ*

**ՊԻՏԻ ԽՕՍԻՆ՝ ՍՐԲԱԶԱՆ ՀԱՅՐԸ, ՊԱՐՈՆՆԵՐ՝ ՍԵԴՐԱԿ ՔԱՐԵԱՆ Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ ԵՒ Գ. ՖԷՆԷՐՃԵԱՆ**

*Գեղարուեստական բաժնին իրենց աւրաչափ մասնակցութիւնը պիտի բերեն.* — Օր. Հայկանոյշ Թորոսեան, Պ. Պ. Ա. Գմբէթեան, Լ. Աւագեան *(ջութակ),* Օր. Աժտէրեան *(դաշնակ),* Պ. Մ. Պօղոսեան *մեներգ դաշնակի ընկերակցութեամբ* Պ. Կ. Ափրիկեանի, Օր. Մարանկօզեան *(ար*տասանութիւն) :

*Խմբերգ* Փարիզահայ երգչախումբի կողմէ ղեկավարութեամբ Պ. Արա Պարթեւեանի :

*Ծախքերու մասնակցութեան համար մուտքի տոմսեր 2 եւ 3 Ն. Ֆ., կը գտնուին Փարիզի եկեղեցւոյ դիւանատունը եւ շրջանի բոլոր եկեղեցական եւ կրթական մարմիններու մօտ :*

*բոլոր միութիւններուն :*

### ՆՈՒԷՐՆԵՐ

*Յակոբ Թումայեանի մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի Տէր եւ Տիկին Գէորգ Շահինեան տասնական Ն. Ֆ. կը նուիրեն Իսսի Նոր Սերունդի եւ Կապոյտ Խաչի մասնաճիւղերուն։ (Ստանալ Պ. Ե. Աստանալեանէ)։*

## Salle Adyar

4 SQUARE RAPP, PARIS 7

ԱՅՍ ՉՈՐԵՔՇԱԲԹԻ ԻՐԻԿՈՒՆ
ԺԱՄԸ 21ԻՆ

*ԴԱՇՆԱԿԱՀԱՐ*

### ՌԱՖՖԻ ՊԵՏՐՈՍԵԱՆ

*ՅԱՅՏԱԳԻՐ*.— Հայտըն, Շուպէրթ, Գապալեվսքի, Վանտել, Շոփէն։

*Տոմսերը նուագահանդէսին օրը՝ մուտքին։*

### —ՅՈՒՇԱՏԵՏՐ—

*ՍԱԲԱՍՏԻՈՅ Նահանգային Մուրատ Ուսումնասիրացը ընդհ. ժողովի կը հրաւիրէ իր բոլոր անդամները անխտիր, կիրակի (Յունիս 19) առաւօտ ժամը 9.30-ին, Իսսի Խրիմեան վարժարանը։*

### ՅՈՒԼԻՍ 3ԻՆ

Սեբաստիոյ նահանգին Մուրատ Ուսումնասիրացի *հանդէսը իր սանին հրջանաւարտութեան առթիւ՝*

*ՍԱՄՈՒԷԼ ՄՈՒՐԱՏԵԱՆ վարժարանին մէջ։*

Imprimerie Spéciale du journal « Haratch »

### ՄԱՅԻՍ 28Ի ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆԸ
### ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

*ՅՈՒՆԻՍ 19ԻՆ*
*Կը խօսի Ընկ. ՍԻՍԱԿ ՍԻՍԼԵԱՆ*

×

*ԿՐԸՆՈՊԼԻ ՄԷՋ*

*«Մայիս 28» կը տօնուի* Րիւ Ժէ Սէն Լուի *սրահին մէջ, Յունիս 19ին։*
*Կը խօսի ընկ. ԱՍԱՏՈՒՐ ՔԷՕՍԷԵԱՆ*
*Մանրամասնութիւնները յաջորդով։*

### *ԴՊՐՈՑԱՍԷՐ ՏԻԿՆԱՆՑ ՎԱՐԺԱՐԱՆԻ ԱՄԱՎԵՐՋԻ ՄՐՑԱՆԱԿԱԲԱՇԽՈՒԹԻՒՆԸ ԵՒ ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍԸ*

26 Յունիս, Կիրակի օր, ժամը 15–20, իր հաստատութեան պարտէզին մէջ։

*ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱԿԱՆ ՃՈԽ ԲԱԺԻՆ*
*ԵՐԳ, ՊԱՐ, ՆՈՒԱԳ*
*ԵՒ ԱՐՏԱՍԱՆՈՒԹԻՒՆ*

*Ինչպէս նաեւ երգախառն ներկայացում մը սանուհիներուն կողմէ։*
Ծախքերու մասնակցութիւն 2.50 Ն.Ֆ.։
*Հաղորդ. միջոց.— Էկլիզ տը Փանթէն՝ առնել 146 թիւ* օթօպիւսը *եւ իջնել* Րէնսի Փավիյեօն։

*ՄԱՄՈՒԼԻ ՏԱԿ Է*

### ՀԱՅ - ԲՈՅԺ
#### *ԺՈՂ. ԱՄՍԱԹԵՐԹ ԲԺՇԿՈՒԹԵԱՆ*

Խմբագիր՝ Շ. ՆԱՐԴՈՒՆԻ

*Մարտ – Ապրիլի Թիւը, միշտ ճոխ, միշտ այլազան, միշտ հետաքրքրական, միշտ օգտակար։*

Բովանդակութիւն.— *Հասակները կ'երկարին* (Խմբ.).— *Սննդազրկութեան հետեւանքները* (Տոքթ. Գալուստեան).— *Անքնութեան պատճառները եւ դարմանը* (Տոքթ. Բամպուքճեան).— *Փորհարութիւն* (Տոքթ. Ասֆանազ).— *Ցցի կինե-րուն համար* (Տոքթ. Դալլաքեան).— *Աղեթափութիւն* (Տոքթ. Աշճեան).— *Որոտան գետը* (Ս. Յակոբեան).— *Կանխենք ակռաներու փտումը* (Հ. Համբարձումեան).— *Շաքարախտի մասին* (Շ. Նարդունի).— *Յօդացաւի մասին* (Տոքթ. Սերոբեան).— *Մեղուն բժիշկ* (Քաղհան).— *Ի՞նչ գիտենք շաքարախտի մասին* (Տոքթ. Ժերլիէ – Մոռէ).— *Արուեստական սերնդագործութիւն* (Տոքթ. Պանծալի).— *Դասեր Թունաւորումներու դէմ* (Խաչունի).— *Դարձեալ քանսէրի մասին* (Տոքթ. Շ. Այվազեան).— *Ի՞նչպէս մայր կը կանչեն ազգերը.— Որո՞նք չեն կրնար օգանաւ նստիլ։*

*Հայ – Բոյժի Մայիս – Յունիս Թիւը նուիրուած է ամբողջովին Հայաստանի։ Յառաջիկային նման բացառիկ Թիւեր ամբողջովին նուիրուած՝ աչքին, սեռային կեանքին, մանկութեան։*

*Բաժանորդագրութեան պայմաններ.— Տարեկան 15 նոր ֆրանք* (1500 *ֆրանք*)։ *Արտասահման 20 նոր ֆրանք* (2000 *Ֆ.*) *երկու տարեկանը մէկ կանխիկ վճարողին համար 37,5 նոր ֆրանք* (3750 *Ֆր.*)։

Ch. Aïvazian
Au journal HARATCH
32, Rue de Trévise, Paris (9e)

ՅՈԲԵԼԵՆԱԿԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՀԱՆԴԻՍԱՒՈՐ ՏՕՆԱԿԱՏԱՐՈՒԹԻՒՆ

## ԵՂԻՇԷ ՊԱՏՐԻԱՐՔ ԴՈՒՐԵԱՆԻ

ԾՆՆԴԵԱՆ ՀԱՐԻՒՐԱՄԵԱԿԻՆ ԱՌԹԻՒ

*Նախաձեռնութեամբ Փարիզի եւ շրջանի եկեղեցական, ազգային, մշակութային բոլոր միութիւններուն։*

19 Յունիս, կիրակի կէսօրէ ետք ժամը 2,30ին

*Նախագահութեամբ ՍԵՐՈՎԲԷ ԵՊԻՍԿ. ՄԱՆՈՒԿԵԱՆԻ*

### ՊԻՏԻ ԽՕՍԻՆ՝ ՍՐԲԱԶԱՆ ՀԱՅՐԸ, ՊԱՐՈՆՆԵՐ՝ ՍԵԴՐԱԿ ՔԱՐԵԱՆ Մ. ՊԱՐՍԱՄԵԱՆ ԵՒ Գ. ՖԷՆԷՐՃԵԱՆ

*Գեղարուեստական բաժնին իրենց սիրայօժար մասնակցութիւնը պիտի բերեն.* — Օր. Հայկանոյշ Թորոսեան, Պ. Պ. Ա. Գմբէթեան, Լ. Աւագեան (*ջութակ*), Օր. Աժտէրեան (*դաշնակ*), Պ. Մ. Պօղոսեան *մեներգ դաշնակի ընկերակցութեամբ* Պ. Կ. Աֆրիկեանի, Օր. Մարանկօզեան (*արտասանութիւն*)։

*Խմբերգ* Փարիզահայ երգչախումբի կողմէ ղեկավարութեամբ Պ. Արա Պարթեւեանի։

*Ծախքերու մասնակցութեան համար մուտքի տոմսեր 2 եւ 3 Ն. Ֆ., կը գտնուին Փարիզի եկեղեցւոյ դիւանատունը եւ շրջանի բոլոր եկեղեցական եւ կրթական մարմիններու մօտ։*

## ԵՐԵԿՈՅԹ - ԹԷՅԱՍԵՂԱՆ

ՀԱՅ ԳՐՈՂՆԵՐՈՒ ԸՆԿԵՐՈՒԹԵԱՆ ԵՐԵՍՆԱՄԵԱԿԻՆ ԱՌԹՈՎ

17 Յունիս, Ուրբաթ երեկոյ, ժամը 21ին

**Hôtel Lutetia, 43, Boulevard Raspail, Paris**

*Սիրայօժար մասնակցութեամբ արուեստագէտներ Օրիորդ ՇԱՔԷ ՊԷՆԿԵԱՆի (երգ), Պ. Պ. ՍԵԴՐԱԿ ԵԱՎՐՈՒԵԱՆի (դաշնակ), ԱՐՏԱՇԷՍ ԳՄԲԷԹԵԱՆի (արտասանութիւն)։*

Ծախքերու մասնակցութիւն 6 Ն. Ֆ.

